**ՀԱՄԱՅՆԱՎԱՐ** Չինաստանի փոխ–վարչապետը Շէն Եի առաջին անգամ ըլլալով խօսեցաւ Հնդկաստանի հետ սահմանային խնդիրներուն մասին ։ Եի շեշտեց «Չինաստան երբեք ոտք չէ կոխած ուրիշներու հողերուն վրայ եւ պիտի չհանդուրժէ որ ուրիշ մէկը իր հողին վրայ ոտք կոխէ »։

**ՖՐԱՆՍԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ** ազգային դաշնակցութեան նախագահը՝ Ալպէր Պայէ ինքնաշարժի ծանր արկած մը ունեցած եւ հիւանդանոց փոխադրուած է ։ Վիճակը շատ լուրջ է ։

**ՓԱՐԻԶ** կը գտնուի այս միջոցին Սպանիոյ արտաքին նախարարը որ Ուրբաթ օր պիտի տեսնուի Տը Կոլի հետ ։ Փարիզ են նաեւ Թուրքիոյ եւ Յունաստանի արտաքին նախարարները որոնք տեսակցութիւն մը ունեցան Քուվ Տը Միւրվիլի եւ Հերթըրի հետ ։

**ԻՏԱԼԱՑԻ** մեծ յօդուածագիրը՝ Աուկուսթօ Կուէնիէօ, որ արտաքին քաղաքականութեան նուիրուած ձեռնհաս խմբագրականներ կը գրէ « Քոռիէռէ Տէլլա Սէռա»յի մէջ, յօդուած մը գրած է, Օ-ոռռ»ին, որուն մէջ կը գուշակէ հանրային կարծիքը Խրուշչեւ – Այզընհաուըր տեսակցութենէն ։ Իտալացի լրագրողը կը գտնէ որ առաջին անգամ ըլլալով Եւրոպա բացակայ պիտի ըլլայ հոն ուր իր ճակատագրին մասին պիտի խօսուի ։

**ԼՈՆՏՈՆԷՆ** կը հաղորդեն թէ Այզընհաուըրի Մոսկուա երթալուն հաւանական թուականը կը նկատուի Հոկտ. 15էն 30 ։

**ՎԱՐՉԱՊԵՏ** Ատընաուըր Լոնտոն պիտի երթայ Սեպտեմբերի վերջ կամ Հոկտեմբերի սկիզբը ։

**ԽՐՈՒՇՉԵՒ** ճառ մը պիտի խօսի Սեպտեմբեր 17ին Նիւ Եորքի Տնտեսական ակումբին մէջ ։ Այս ձեւով Խորհրդ. Միութեան վարչապետը երեք կարեւոր ճառ խօսած պիտի ըլլայ Միացեալ Նահանգներու մէջ ։

**ՖՐԱՍՔԱԹԻԻ** եպիսկոպոս եւ Ս. Պետրոսի աւագերէց՝ կարդինալ Թէտէսքինի ծանր գործողութեան մը ենթարկուած է ։ 83 տարեկան է եւ վիճակը մտահոգիչ ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկ. Աննա Երէցեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Ճանեան, Հ. Յ. Դ. «Վռամեան» ենթակոմիտէի ընկերները կը ծանուցանեն թէ կիրակի Սեպտ. 6ի առաւօտեան, յետ պատարագի, Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց ամուսնոյն, հօր եւ ընկերոջ

ՀՄԱՅԵԱԿ ԵՐԷՑԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ ։

×

Այրի Տիկին Գրիգոր Գապասայեան, Պ. Կարպիս Գապասայեան, Օրիորդ Մարկրիթ Գապասայեան եւ նշանածը՝ Պ. Գրիգոր Աբէլեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի կիրակի առաւօտ Սեպտ. 6, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԳՐԻԳՈՐ ԳԱՊԱՍԱՅԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ ։

Նոյն օրը հոգեհանգիստ պիտի կատարուի նաեւ

ՍԱՐԳԻՍ ԱԲԷԼԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ ։

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները ։

×

Պ. Բարսեղ Զաքարեան եւ զաւակները իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ մօր՝ Տիկին ՇԱՄԻՐԱՄ ԶԱՔԱՐԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան պաշտօն կատարել կուտան այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցւոյն մէջ ։

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ ։



## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Խորին վշտով կ'ողբանք ընկեր Գաբրիէլ Լազեանի ղառն կորուստը ։ Ցաւակցութիւններ ընտանիքին եւ ընկերներուն ։

Հ. Յ. Դ. ՊՈՐՏՈՅԻ ՄՈՒՐԱՏ ԽՈՒՄԲ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Լիլիկ Սապունճեան եւ զաւակները, Ազկին եւ Յակոբիկ Սապունճեան եւ ընտանիկան բոլոր պարագաները խորին շնորհակալութիւնները կը յայտնեն այն բոլոր ազգականներուն եւ բարեկամներուն, որոնք անձամբ, նամակով կամ հեռագրով իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իրենց ողբացեալ ամուսնոյն, հօր եւ եղբօր՝

ՆԵՐՍԷՍ ՍԱՊՈՒՆՃԵԱՆԻ

ղառն կորուստին առթիւ ։

×

Մարսէյլ – Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ Եկեղեցւոյ Կրօն. ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացած է Ամերիկայի Բէնոյի գործարանի անդամներու կողմէ, փոխան ծաղկեպսակի տարաբախտ Պետրոս Գէորգեանի մահուան առթիւ 48·575 ֆրանք ։

Նոյնպէս Կրօն. Ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները, Օր. Նուարդ Տէրտէրեանի ամուսնութեան առթիւ Պ. Պ. Քերովբէ Կարապետեան վեց հազար, Ա. Տէրտէրեան հազար ֆր. եկեղեցւոյն ։

Պալաքեան որբազանի շիրիմին համար Պ. Պ. Ղազարոս Քէշիշեան հազար ֆր., Խ. Արզումանեան հինգ հազար ֆր. ։

(Ստանալ Կրօն Ընկերութիւնէն) ։






Imprimerie Spéciale du Journal « Haratch »




## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Եկեղեցիին վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս կիրակի մասնաւոր հանգստաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի Մայր եկեղեցիի նախկին վաստակաւոր դպրապետ ողբացեալ

ՅԱԿՈԲ ՄԱԼԱՔԵԱՆԻ

եւ դպրախումբի նախկին անդամուհի իր քենիին՝

Օր. ԳԱՅԵԱՆԷ ՔԻՐԱԶԵԱՆԻ

յիշատակին, ներկայութեամբ ընտանեկան պարագաներու ։

Հանգուցեալներուն յիշատակը յարգողները կը հրաւիրուին ներկայ գտնուիլ ։

Աշոտ Պատմագրեան ամենախոր վշտով յայտնում է իր կեանքի եւ իր արուեստի անզուգական ընկերոջ՝ երգչուհի

**ՌՈԶ ՊԱՏՄԱԳՐԵԱՆԻ**

դառնաղէտ մահը, որ տեղի ունեցաւ Օգոստոս 25ին, Ցիւրիխի մէջ, վիրաբուժական ծանր գործողութեան հետեւանքով:

**ՆՈՒԷՐ**

Լեւոն Սուքիասեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Պ. Յովսէփ Օհանեան հազարական ֆրանք կը նուիրէ «Հայ–Բոյժ»ին եւ «Յառաջ»ին:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ներսէս Սապունճեանի մահուան առթիւ Գործունեան ընտանիքը (Մարսէյլ) 10000 ֆրանք կը նուիրէ Աղքատախնամին:

(Ստանալ «Յառաջ»էն):

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Եկեղեցիին վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի մասնաւոր հանդիսաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի Մայր եկեղեցիի նախկին վաստակաւոր դպրապետ ողբացեալ

**ՅԱԿՈԲ ՄԱԼԱՔԵԱՆԻ**

եւ դպրախումբի նախկին անդամուհի իր քենիին՝

**Օր. ԳԱՅԵԱՆԷ ՔԻՐԱՋԵԱՆԻ**

յիշատակին, ներկայութեամբ ընտանեկան պարագաներու:

Հանգուցեալներուն յիշատակը յարգողները կը հրաւիրուին ներկայ գտնուիլ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները, ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.—

Փոնտը Շէրիէն արձարանատեր Տէր եւ Տիկին Պէրժանէ հազար ֆրանք: Ամերիկայէն Տիկին Եկաւեանէ հազար ֆր.: Շասէն Տէր եւ Տիկին Գալուստ Տօնիկեանէ, իրենց զաւկին ղինուորութենէ դարձին առթիւ երկու հազար ֆրանք: Տիկին Մաքրուհի Զիվիճեանէ հազար, Պ. Զենոբ Տուրիկեանէ հինգ հարիւր, Ոմն հանգուցեալ Մարտիրոս Յովհաննէսեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի երեք հազար, Սէն Շամոնէն ոմն քսան հազար, Փարիզէն Պ. Սարգիս Արզումանեանէ հինգ հազար ֆրանք:

## ԼԸ ՓԷՔԻ ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

3 Ավընիւ Կռանշան, Լը Փէք, Սէն–է–Ուազ

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ.— Դասական Ընթացք (Cours Classique):

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ.—

1) Տասը տարեկանէն սկսեալ, Երկրորդական Վարժարանի որեւէ դասարանի ուսանող կ'ընդունուի պայմանաւ որ ունենայ իր դասարանին վերաբերեալ նիւթերու բաւարար ծանօթութիւնը:

2) Արտասահմանէն կամ Ֆրանսայի գաւառներէն եկող աշակերտը, Փարիզի մէջ պէտք է ունենայ խնամակալ մը:

3) Աշակերտը պէտք է ներկայացնէ Ընծայարանին Տնօրէնութեան.—

ա) Յարդ. յաճախած դպրոցին դասագրքոյկը եւ բարի վարքի վկայական:

բ) Մկրտութեան եւ բժշկական պատուաստի վկայական:

4) Դպրոցական տարեկան թոշակը (ընդամենայ) 150·000 ֆրանք է, երեք մասով վճարելի, իւրաքանչիւրը եռամսեային սկիզբը:

Նպաստաւոր զեղչ մը նախատեսուած է խիկալէս կարօտեալ ընտանիքներու զաւակներուն համար:

Ցիշեալ սակագինէն դուրս կը մնան աշակերտին ուղեւորութեան, հանդերձեղէնի, գրենական պիտոյքի, բժշկական խնամքի ծախքերը:

Դիմել՝

Direction Ecole Apostolique

3, Rue de Grandchamp - Le Pecq S. et O. France





## ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները բաց են: Անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան:

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով:

Դիմել՝ 1 Պուլվ– տիւ Նօր, Լը Րէնսի: Հեռաձայն՝ Լը Րէնսի 172:

**ՎԵՐԱՄՈՒՏ**

Երկուշաբթի առաւօտ Սեպտեմբեր 21: Ծնողները կրնան իրենց զաւակները դպրոց առաջնորդել Կիրակի իրիկուն կամ Երկուշաբթի առաւօտ:



## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Այս Կիրակի առաւօտ, ժամը 10·45ին, կը խօսի վերապատուելի ՍԻՄԼԵԱՆ:


Imprimerie Spéciale

du Journal « Haratch »

**ՖՐԱՆՍԱՅԻ** անկախ երեսփոխանը՝ Ժան Ճուրքատ մեռաւ անցեալ օր, կառքը վարած ատեն, զոհ երթալով սրտի տագնապի մը։ Ճուրքատ, 57 տարեկան էր եւ Ազգ. Ժողովի փոխ-նախագահը։

**ՇԱՐԺԱՆԿԱՐԻ** Վենետիկի փառատօնը վերջացաւ Կիրակի օր։ Առաջին մրցանակը տրուեցաւ երկու իտալական ժապաւէններու՝ Ռոսելլինիի «Զօրավար Տէլլա Ռովեռէ»ին եւ Մոնիչելլիի՝ «Մեծ պատերազմին»։ Լաւագոյն բեմադրութեան մրցանակը տրուեցաւ Շուէտացի՝ Պերկմանի։ Լաւագոյն դերասանները նկատուեցան՝ ամերիկացի Ճէյմս Սթիուըրթ եւ Ֆրանսուհի՝ Մատըլէն Ռոպէնսոն։

**ՔԱՆԱՏԱՅԻ** փրոֆ. Լինըս Փաուլինկ որ Նոպէլեան մրցանակաւոր է յայտարարեց թէ, վերջին տասնըչորս տարուան ընթացքին կատարուած հիւլէական փորձերու հետեւանքով, մէկուկէս միլիոն հոգի պիտի մեռնին։ Յայտնի փրոֆէսէօրը աւելցուց թէ ամէն մէկ փորձի հետեւանքով 30էն 60 հազար հոգի պիտի մեռնին։

**ՍԷՈՒՏԱԿԱՆ** Արաբիոյ Թագաւորին եւ նախագահ Նասրի խօսակցութիւններէն ետք, Գահիրէի մէջ հրատարակուեցաւ պաշտօնական զեկոյց մը որուն մէջ արաբ երկու ղեկավարները կը շեշտեն իրենց համաձայնութիւնը՝ «ազատագրելու համար արաբ ժողովուրդները օտար լուծերէն»։

**ՖՐԱՆՍԱՅԻ** մեծագոյն ճարտարարուեստագէտներէն՝ Մարսէլ Պուսաք Փարիզ վերադարձաւ երեք օրուան այցելութիւն մը տալէ ետք Խորհրդ. Միութիւն։ Պուսաք տեսակցութիւն մը ունեցած է Խրուշչեւի հետ Միջազգային կացութեան շուրջ, եւ այս առթիւ յայտարարած է թէ միջազգային յարաբերութեանց զարգացումը կրնայ նկատի առնուիլ լաւատեսութեամբ։ Պուսաք Մոսկուա գացած է Փարիզի խորհրդային դեսպանին հրաւէրով։





## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տէր եւ Տիկին Հայէչեան 1500 ֆրանք կը նուիրեն Շաւարշ Միսաքեան սրահին։

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Պօմոնի «Յառաջ» խումբի ընկերները այս Շաբաթ, ժամը 9-ին։ Ներկայ կ՚ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը։ Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է։



## ԼԸ ՓԷՔԻ ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

3 Ավընիւ Կուանշան, Լը Փէք, Սէն-է-Ուազ

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ.— Դասական Ընթացք (**Cours Classique**)։

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ.—

1) Տասը տարեկանէն սկսեալ, Երկրորդական Վարժարանի որեւէ դասարանի ուսանող կ՚ընդունուի պայմանաւ որ ունենայ իր դասարանին վերաբերեալ նիւթերուն բաւարար ծանօթութիւնը։

2) Արտասահմանէն կամ Ֆրանսայի գաւառներէն եկող աշակերտը, Փարիզի մէջ պէտք է ունենայ խնամակալ մը։

3) Աշակերտը պէտք է ներկայացնէ Ընծայարանին Տնօրէնութեան.—

ա) Յարգ. յաճախած դպրոցին դասագրքոյկը եւ բարի վարքի վկայական։

բ) Մկրտութեան եւ բժշկական պատուաստի վկայական։

4) Դպրոցական տարեկան թոշակը (ննամսեայ) 150·000 ֆրանք է, երեք մասով վճարելի, իւրաքանչիւրը եռամսեային սկիզբը։

Նպաստաւոր զեղչ մը նախատեսուած է խեղճ կարօտեալ ընտանիքներու զաւակներուն համար։

Յիշեալ սակագինէն դուրս կը մնան աշակերտին ուղեւորութեան, հանդերձեղէնի, գրենական պիտոյքի, բժշկական խնամքի ծախքերը։

Դիմել՝

Direction Ecole Apostolique

3, Rue de Grandchamp - Le Pecq S. et O. France

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԱԼՊԵԱՆ ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՀԵՏ

ԳՐԵՑ

ԱՐԱՄԱՅԻՍ ՍՐԱՊԵԱՆ

Դիմել հեղինակին՝

Via Pacini 30, MILANO

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## Անդաստան

ԹԻՒ 10

ԱՆԴԱՍՏԱՆ Գրականութեան Արուեստի ԱՆԴԱՍՏԱՆ Հայ եւ Օտար գրականութեան ԱՆԴԱՍՏԱՆ

Խմբագիր

ԲԻՒԶԱՆԴ ԹՕՓԱԼԵԱՆ

46, Rue Richer - PARIS (9·)

Գին՝ 1200 ֆրանք

Արտասահման 4 տոլար



## ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները բաց են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով։

Դիմել՝ 1 Պուլվ- տիւ Նոր, Լը Րէնսի։

Հեռաձայն՝ Լը Րէնսի 172։

ՎԵՐԱՄՈՒՏ

Երկուշաբթի առաւօտ, Սեպտեմբեր 21

Ծնողները կրնան իրենց զաւակները դպրոց առաջնորդել Կիրակի իրիկուն կամ Երկուշաբթի առաւօտ։

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՎԵՐԱՄՈՒՏ

Երկուշաբթի առաւօտ Սեպտեմբեր 21

Ծնողներուն բացառիկ դիւրութիւն մը ընծայելու համար, արձանագրութիւնները պիտի շարունակուին մինչեւ վերամուտին օրը։

Collège Arménien S. Moorat

26, Rue Troyon - SEVRES (S. & O.) Tél. OBS. 18-28

## ԱՌՆՈՒՎԻԼԻ ԱՆԱՐԱՏ ՅՂՈՒԹԵԱՆ ՔՈՅՐԵՐԸ

Իրենց Հաստատութեան մէջ կ՚ընդունին, գիշերօթիկ, 5էն 13 տարեկան աղջիկներ։ Քոյրերուն հսկողութեամբ, աշակերտուհիները կը յաճախեն ֆրանսական դպրոցի դասընթացքներուն եւ կը հետեւին հայերէնի, նուագի, ուսումներուն։

Արձանագրութեան եւ յաւելուածական տեղեկութիւններու համար դիմել տեսչութեան՝

SŒURS ARMÉNIENNES

73, Av. Henri Barbusse Arnouville les Gonesse S. et O.

Tél. : No 179


Imprimerie Spéciale du Journal « Haratch »

*ՍԵՊՏԵՄԲԵՐ* 15ին Ֆրանսայի դպրոցական վերամուտը կը սկսի : Աշակերտներու ընդհանուր թիւն է՝ 9·618·000 :

*ՆԱԽԱԳԱՀ* Այզընհաուըր Ուաշինկթըն վերադարձաւ եւ յայտարարեց թէ ամէն ինչ սքանչելի կ'երթայ : Նախագահը աւելցուց.— «Բոլոր խնդիրները, ինչ որ ըլլայ անոնց կարեւորութեան աստիճանը, լուծուեցան պետական ղեկավարներու հետ ունեցած խօսակցութիւններովս : Ժամբորդութեանս ընթացքին հաստատուեցաւ Արեւմտեան միասնականութեան ձայնը » :

*ՊՈՒԷՆՈՍ ԱՅՐԷՍԻ մէջ* մշակութային հարցերու նախարարը՝ Անտրէ Մալրօ ճառ մը խօսելով ըսած է .— Լատին Ամերիկան աշխարհի ճակատագրին մէջ մտաւ, յոյսի երկրամասն է : Նախագահ Տը Կօլ Մալրօյի միջոցով նամակ մը ղրկած էր Արժանթինի հանրապետութեան նախագահ՝ Ֆըրոնտիսիի :

*ՎԱՐՉԱՊԵՏ ՆԵՀՐՈՒ* յայտարարեց խորհրդարանին առջեւ թէ Սպիտակ գիրք մը լոյս տեսած է պարզելով Հնդկաստանի եւ Համայնավար Չինաստանի յարաբերութիւնները 1954 Յուլիս 17էն ի վեր :

*ՄՈՍԿՈՒԱՅԻ* ձայնասփիւռը հաղորդած է « Փրաւտա »յի մէկ յօդուածը որ խստօրէն կը քննադատէ երկրագործական արտադրութեան նուազումները եւ երկրագործները որոնք չեն հասնիր եօթնամեայ ծրագրին նախատեսած քանակութեան :

*ԱՆՔՈՆԱ* իտալական քաղաքը մրրիկի մը հետեւանքով մեծ վնասներ ունեցած է չորս միլիառ հինգ հարիւր միլիոնի կը հասնի առաջին հաշիւը : 15 հոգի մեռած եւ քանի մը հարիւր հոգի վիրաւորուած են :

*ԽՈՐՀՐԴԱՅԻՆ* Միութիւնը մերժեց մուտքի վիզա տալ Նիքոլա Փասթերնաքի որ ծանօթ գրագէտին եղբօր որդին է եւ ուզած էր անգլիացի ուսանողներու խումբի մը հետ Խորհրդ. Միութիւն այցելել :

*ՄԵԾ ՀՐԴԵՀ* մը ծագած է Ֆոնթէնըպլոյի անտառներուն մէջ : Երկար ատեն չկրցան հրշէջները բոցերը մարել եւ Պարպիզոնի շրջանը ինչպէս նաեւ ազգային թիւ 7 ճամբան վտանգուած էին :

*ՔԱԶԱՊԼԱՆՔԱՅԻ* Արաբական Լիկայի ժողովին մէջ 15 միլիառի պիւտճէ մը քուէարկուեցաւ Ալժերիոյ ազատագրական ճակատին : Որոշ տարակարծութիւններ կան սակայն պաղեստինցի գաղթականներու հարցին առթիւ :

*ԱՆԳԼԻՈՅ* Վարչապետ Մաք Միլըն Սկովտիա գնաց Թագուհին տեսնելու եւ անոր հաղորդելու համար ընտրութեան թուականները : Մոսկուայի մէջ աշխատաւորական պարագլուխը՝ Պիվըն յայտարարեց թէ իր կուսակցութիւնը հաւանաբար յաղթէ յառաջիկայ ընտրութեանց :

*ԼԱ ՔԱԼԼԱՍ* աշխարհի ամէնամեծ երգչուհիներէն մէկը պիտի ամուսնալուծուի : Կ'ըսուի թէ յոյն նշանաւոր Օնասիսի հետ սիրային վէպակ մը ծագած է ծովային զբօսապտոյտէն ի վեր :

*ԱԼԺԵՐԻՈՅ մէջ* 598 Ֆելլականներ պատերազմելու վիճակէ դուրս հանուած են :

« *ԼԱՊԸՐ ՏԷՅ*»ի առթիւ (աշխատանքի օր) ամերիկեան ճամբաներու վրայ կառքի արկածի հետեւանքով 182 հոգի մեռած են :

*ԵԿԱՄՈՒՏԻ* տուրքի վճարումին երկրորդ մասը կրնայ վճարուիլ մինչեւ Նոյեմբեր 16, Ֆրանսայի մէջ :

*ՖՐԱՆՍԱՅԻ մէջ* այս շաբթուան ընթացքին պաքալորէայի երկրորդ քննութիւնը տեղի կ'ունենայ անոնց համար որոնք չյաջողեցան անցեալ Յունիսին :



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՄԱՐՍԷՅԼ* .— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Պօմոնի «Յառաջ» խումբի ընկերները այս Շաբաթ, ժամը 9-ին : Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը : Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է :

*ՓԱՐԻԶ* .— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Րիւ Քոմփան :

*ԱԼՖՈՐՎԻԼ* .— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին : Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ : Կարեւոր օրակարգ :

*ԼԻՈՆ* .— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Յօյնեբու սրահը : Պարտաւորիչ ներկայութիւն :

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ԼԻՈՆ* .— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն խորին ցաւակցութիւն կը յայտնէ վաստակաւոր եւ մտաւորական ընկերոջ Գրիգոր Լագեանի կսկծալի մահուան առթիւ իր ընտանեկան պարագաներուն :

### ԽԱՉՎԵՐԱՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

★

Այս Կիրակի Խաչվերացի տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Պիտի պատարագէ եւ քարոզէ Հայրապետական Պատուիրակ՝

*ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ*

Սկիզբն ժամերգութեան ժամը 8ին, պատարագ 10ին : Երեկոյեան անդաստան Խաչվերացի, ժամերգութիւն ժամը 4·30ին : Երկուշաբթի՝ Յիշատակ Մեռելոց, ժամերգութիւն ժամը 9ին, պատարագ 10ին :

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

## ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Ծանօթ դաշնակահար՝
ՍԵԴՐԱԿ ԵԱՎՐՈՒԵԱՆ
Պիտի նուագէ Ուրբաթ իրիկուն ֆրանսական ձայնասփիւռէն :
Ֆրանս 3 (նախկին ազգային), ժամը 19·15ին :



### ԱՌՆՈՒՎԻԼԻ ԱՆԱՐԱՏ ՅՂՈՒԹԵԱՆ ՔՈՅՐԵՐԸ

Իրենց Հաստատութեան մէջ կ'ընդունին, գիշերօթիկ, 5էն 13 տարեկան աղջիկներ : Քոյրերուն հսկողութեամբ, աշակերտուհիները կը յաճախեն ֆրանսական դպրոցի դասընթացքներուն եւ կը հետեւին հայերէնի, ներքին, ուսումներուն :

Արձանագրութեան եւ յաւելուածական տեղեկութիւններու համար դիմել տեսչութեան՝

SŒURS ARMÉNIENNES
73, Av. Henri Barbusse Arnouville les Gonesse S. et O.
Tél. : No 179

### ԴՊՐՈՑ· ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները բաց են : Անէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան :

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալորէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով :

Դիմել՝ 1 Պուլվ- տիւ Նօր, Լը Րէնսի :
Հեռաձայն՝ Լը Րէնսի 172 :

ՎԵՐԱՄՈՒՏ
Երկուշաբթի առաւօտ, Սեպտեմբեր 21
Ծնողները կրնան իրենց զաւակները դպրոց առաջնորդել Կիրակի իրիկուն կամ Երկուշաբթի առաւօտ :

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Այր մարդու դերձակ մը Պէլ - մըզիւռ, կը փնտռէ շատ լաւ գործաւորուհի մը :
ԴԻՄԵԼ.—

DAVID
68 bis, Rue Réaumur, Paris 3.
TURbigo 81-87



Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՎԱԼԱՆՍ — Հ. Յ. Դ. Շրջ. «Քրիստափոր» կոմիտէն խորին վշտով կ'ողբայ անդարմանելի կորուստը, մեր վեթերան ընկերոջ Գաբրիէլ Լազեանի, ցաւակցութիւններ «Յուսաբեր»ի խմբագրութեան եւ ընտանիքին :

×

Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն կուգայ խոնարհիլ իր վեթերան եւ անխոնջ ընկերոջ Գաբրիէլ Լազեանի թարմ շիրիմին առջեւ, եւ այս առթիւ իր խոր ցաւակցութիւնները կը յայտնէ թէ իր վերին մարմիններուն եւ թէ իր ընտանեկան պարագաներուն :

×

Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն խորապէս ազդուած անզուգական վեթերան ընկեր Գ. Լազեանի դառնաղէտ մահուան առթիւ իր ցաւակցութիւնները կը յայտնէ Տիկին Լազեանի, աղջկան եւ պարագաներուն, իր յիշատակին 5000 ֆր. կը նուիրէ Փարիզի Մշակութային Տան, 3000 ֆր. եւս «Յառաջ»ի բարգաւաճման համար :

### ԽԱՉՎԵՐԱՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Այս Կիրակի Խաչվերացի տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Պիտի պատարագէ եւ քարոզէ Հայրապետական Պատուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

Սկիզբն ժամերգութեան ժամը 8ին, պատարագ 10ին : Երեկոյեան անդաստան Խաչվերացի, ժամերգութիւն ժամը 4·30ին : Երկուշաբթի՝ Յիշատակ Մեռելոց, ժամերգութիւն ժամը 9ին, պատարագ 10ին :

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Թագուհի Գուլումեան, զաւակները, բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ այս Կիրակի, առաւօտեան Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ տեղի պիտի ունենայ հոգեհանգստեան պաշտօն իրենց ամուսնոյն եւ հօր ԿԱՐԱՊԵՏ ԳՈՒԼՈՒՄԵԱՆԻ մահուան Բ. տարեդարձին առթիւ : Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները :

Այս առթիւ ընտանիքը կը նուիրէ.— Հայ Մշակոյթի Տան հազար ֆրանք, Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հազար, «Յառաջ» թերթին երկու հազար : (Մշակոյթի Տան գումարը ստանալ «Յառաջ»էն :

×

ԼԻՈՆ.— Այրի Տիկին Եղսա Օհաննէսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Սարգիս Օհաննէսեան եւ զաւակները (Կարտան) հոգեհանգստեան պաշտօն կատարել կուտան իրենց ամուսնոյն, հօր եւ եղբօր՝ Մարտիրոս Օհաննէսեանի մահուան քառասունքին առթիւ : Այս Կիրակի Լիոնի Հայոց եկեղեցիին մէջ յետ պատարագի :

Կը խնդրուի իր յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ :

×

Պ. Փիլիպպոս Եսայեան, զաւակները եւ ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ այս Կիրակի առաւօտ յետ պատարագի իրենց կնոջ եւ մօր՝ ՎԱՐԴԱՆՈՅՇ ԵՍԱՅԵԱՆԻ (Սէօլէօզցի) մահուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները :

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, RUE THOUIN

Այս Կիրակի ժամը 10·30ին Խաչվերացի տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ

ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ԱՄԱՏՈՒՆԻ





## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Պօմոնի «Յառաջ» խումբի ընկերները այս Շաբաթ, ժամը 9ին : Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը : Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Րիւ Քռնփան :

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին : Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ : Կարեւոր օրակարգ :

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Յոյներու սրահը : Պարտաւորիչ ներկայութիւն :

ՄԱՐՍԷՅԼ (Սէն Ժերոմ).— Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ այս Շաբաթ, ընկեր Սիմոնեանի բնակարանը : Կարեւոր օրակարգ : Բացակաները նկատի կ'առնուին :

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. «Քրիստափոր» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ : Կարեւոր օրակարգ :

ՍԱՐՍԷԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Սարսէլի եւ Առնուվիլի ընկերները այս Շաբաթ, ժամը 20·30ին ընկեր Օ. Կարապետեանի տունը, Սարսէլ : Բացակաները նկատի պիտի առնուին :

### ԼԸ ՓԷՔԻ ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ

3 Ավընիւ Կռանշան, Լը Փէք, Սէն-է-Ուազ

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ.— Դասական Ընթացք (Cours Classique) :

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐ.—

1) Տասը տարեկանէն սկսեալ, Երկրորդական Վարժարանի որեւէ դասարանի ուսանող կ'ընդունուի պայմանաւ որ ունենայ իր դասարանին վերաբերեալ նիւթերուն բաւարար ծանօթութիւնը :

2) Արտասահմանէն կամ Ֆրանսայի գաւառներէն եկող աշակերտը, Փարիզի մէջ պէտք է ունենայ խնամակալ մը :

3) Աշակերտը պէտք է ներկայացնէ Ընծայարանին Տնօրէնութեան.—

ա) Յարգ. յաճախած դպրոցին դասավրկայականը եւ բարի վարքի վկայական :

բ) Մկրտութեան եւ բժշկական պատուաստի վկայական :

4) Դպրոցական տարեկան թոշակը (ինամսեայ) 150·000 ֆրանք է, երեք մասով վճարելի, իւրաքանչիւրը եռամսեային սկիզբը :

Նպաստաւոր զեղչ մը նախատեսուած է խեկապէս կարօտեալ ընտանիքներու զաւակներուն համար :

Յիշեալ սակագինէն դուրս կը մնան աշակերտին ուղեւորութեան, հանդերձեղէնի, գրենական պիտոյքի, բժշկական խնամքի ծախքերը :

Դիմել՝

Direction Ecole Apostolique
3, Rue de Grandchamp - Le Pecq S. et O. France

**ՓՐԱՆՍԱՅԻ** համայնավար գաղափարական ամսաթերթ՝ Նովա Միսլի համաձայն Ցովհաննէս ԻԳ.ի պատրաստած տեսգերական ժողովին նպատակն է՝ հակահամայնավար ճակատ մը կազմել :

**ՈՒՈՇԻՆԿԹԸՆԻ** Սպիտակ Տան բանբերը յայտարարեց թէ Այզընհաուըր միտք չունի Նոր Տէհլի երթալու Մոսկուայէն վերադարձին :

**ՏԱԼԱՅԻ ԼԱՄԱՆ** սոխպոզական նամակ մը գրկած է Համըրշըլտի ՄԱԿի միջամըտութիւնը պահանջելով Թիպեթի հարցին մէջ։

**ՆԵՀՐՈՒ** խօսքը ուղղելով հնդկական Բարձր ժողովին յայտարարեց թէ արտաքոյ բան մը կ'ըլլար որ Հնդկաստան եւ Չինաստան պատերազմի մտնեն լերան քանի մը գագաթի համար։ Պոմպէյի մէջ, Քրիշնա Մենոն հրապարակային հաւաքոյթի մը ընթացքին ըսաւ .— «Հնդկաստանի սահմանները սուրբ եւ անդպչելի են. ինչ որ մերն է, մերը կը մնայ»:

**ԱՄԵՐԻԿԵԱՆ** խորհրդարանը որոշեց նըկատի չառնել Այզընհաուըրի վեթօն հանրային շինութիւններու ծրագրի մը համար : Առաջին անգամն է որ նախագահական վեթօն կը մերժուի Այզընհաուըրի ընտրութենէն ի վեր, որ ցարդ 146 անգամ գործածած է այդ իրաւունքը:

**ԽՐՈՒՇՉԵՒԻ** պիտի ընկերանան վերը նշանակուած անձնաւորութիւններէն զատ, քառասուն լրագրողներ: Այս թիւը աւելի բարձր է քան այն լրագրողներունը որոնք Սթալինին ընկերացած են Բ. Աշխարհամարտէն ետք՝ Թեհրան եւ Փոցտամ :

**ԱՆԳԼԻԱ** կը պատրաստուի յառաջիկայ ընտրութիւններուն: Սեպտեմբեր 18ին, Թագուհին Լոնտոն պիտի երթայ անձամբ լուծելու համար խորհրդարանը :

**ՄՈՆԹԷՎԻՏԷՕ** հասաւ Ֆրանսական կառավարութեան մշակութային հարցերու նախարարը՝ Մալրօ:

**ԽՈՐՀՐԴԱՅԻՆ** տնտեսական պատուիրակութիւն մը Թունուզ հասաւ նորոգելու համար երկու երկիրներու առեւտրական համաձայնութիւնը :

«**ԱԼԺԵՐԻՈՅ** ատժամեայ կառավարութեան » յայտարարութեան համաձայն Սեպտեմբեր 6էն 9, Ֆրանսացիները 256 զինուոր կորսնցուցած են :

**ԱՄՄԱՆԻ** կառավարութիւնը տասը ալժերիացի աշակերտի կրթաթոշակը բոտանձնած է։ Այս տղաքը պիտի ուսանին յորդանանեան գպրոցներու մէջ։

**ԳԵՐՄԱՆԻՈՅ** վարձակառքերու (թաքսի) շարժավարները գործադուլ մը ըրին աջի օր , պահանջելով որ մահապատիժ հաստատուի ոճիրներու համար։ 1945էն ի վեր 150 շարժավարներ զոհ գացած են զանազան յարձակումներու :

« **ՎՏԱՆԳԱՒՈՐ** յարաբերութիւնները » ժապաւէնը զոր պատրաստած է նոր հոսանքի բեմադիր՝ Վատիմ արտօնուեցաւ զանազան արգելքներէ ետք : Հակառակ անոր որ վէպին հեղինակը այլեւս հանրային սեփականութիւն է, Գրողներու Միութիւնը կ'ըսէ թէ նման վէպի մը արդիական ձեւ տալով, գրականութիւնը կը զոհուի: Վէճը կը շարունակուի :

**ԱՆԳԼԻՈՅ** ելմտական նախարարին համաձայն պահպանողականներու յաղթանակը ապահով է։ Անգլիոյ մէջ արդէն իսկ կը ծախուին ընտրական լոզունգներ ինչպէս «ես Մաք Ման մըն եմ» , այսինքն Մաքմիլընի համար պիտի քուէարկեմ :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութիւնը եւ բանակումի յանձնախումբը իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն Կեդր. Ֆրանսայի Ֆրանսահայ Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն, Հ. Յ. Դ. կուսակցական մարմիններուն նուիրատու հայրենակիցներու եւ բոլոր այն ընկերուհիներուն եւ ընկերներուն, որոնք իրենց անվերապահ աջակցութեամբ սատարեցին Փալատրիւի Օգոստոս 16ի փառատօնին յաջողութեան :

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Պրիւսէլէն Փափազեան ընտանիքը 10000 ֆրանք նուիրած է Կապոյտ Խաչի օգնութեան կայանին, իրենց սիրեցեալ եղբօր՝ Կարպիս Փափազեանի մահուան եօթներորդ տարեդարձին առթիւ:



## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի Խաչվերացի տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի Շաւիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ։ Երգեցողութիւնները կը ղեկավարէ երաժշտապետ Պ. Նշան Սերգոյեան :



## ԽԱՉՎԵՐԱՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Այս Կիրակի Խաչվերացի տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։

Պիտի պատարագէ եւ քարոզէ Հայրապետական Պատուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

Սկիզբն ժամերգութեան ժամը 8ին , պատարագ 10ին: Երեկոյեան անդաստան Խաչվերացի , ժամերգութիւն ժամը 4·30ին: Երկուշաբթի՝ Ցիշատակ Մեռելոց , ժամերգութիւն ժամը 9ին, պատարագ 10ին :

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը կը ծանուցանէ որ Խաչվերացի տօնը այս Կիրակի կը կատարուի հանդիսաւոր կերպով, ինչպէս նաեւ Մեռելոցի հոգեհանգստեան պաշտօնները՝ յաւարտ պատարագի: Իսկ կէս օրէ ետք ժամը 4·30ին՝ Խաչվերացի աւանդական թափօրն ու Անդաստանը, եւրայատուկ երգեցողութիւններով :

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, RUE THOUIN

Այս Կիրակի ժամը 10·30ին Խաչվերացի տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ

ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ԱՄԱՏՈՒՆԻ



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կը փնտռեմ զաւակս՝ Սամուէլեանվարդան կամ Վալոդիա Առաքել, ծնեալ 1919ին, Հայաստանի Օրտիպատ շրջանի Ցըղնայ գիւղը : Զինուոր գացած է 1939ին, մինչեւ հիմա լուր մը չունիմ , կը կարծուի արտասահման ըլլալ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել հօրը բժիշկ Առաքել Սամուէլեանի, Սփենդիմի փողոց 69, Երեւան, Հայաստան :

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »



# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

**ՄԱՐՍԷՅԼ**.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Պօմոնի «Յառաջ» խումբի ընկերները այս Շաբաթ, ժամը 9ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը : Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է :

**ՓԱՐԻԶ**.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ , ժամը 21ին , Րիւ Քոնփան :

**ՄԱՐՍԷՅԼ** (Սէն Ժերոմ).— Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէին ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ այս Շաբաթ, ընկեր Սիմոնեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի կ'առնուին :

**ՎԱԼԱՆՍ**.— Հ. Յ. Դ. Շրջ. «Քրիստափոր» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը:Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ : Կարեւոր օրակարգ :

**ՍԱՐՍԷԼ**.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Սարսէլի եւ Առնուվիլի ընկերները այս Շաբաթ, ժամը 20·30ին ընկեր Օ. Կարապետեանի տունը, Սարսէլ: Բացակաները նկատի պիտի առնուին :

**ՄԱՐՍԷՅԼ**.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ շրջանի բոլոր խումբերու եւ ենթակոմիտէներու վարչութիւնները, այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբ: Բոլորին ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ :

**ՄԱՐՍԷՅԼ**.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ « Զաւարեան » ենթակոմիտէի վարչութիւնը, այս Երկուշաբթի, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբ :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

**ՀԱՄԱԽԱՐԲ**. Հայր. Միութիւնը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Շաբաթ ժամը 21ին, Պ. Սիմոնեանի սրճարանը: Օրակարգ .— Հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն :

Ֆրանքլին Տ. Ռուզվելթի, Խրուշչեւ վարչապետ Խորհրդ. Միութեան»:

Հոս է, Նիւ Եորքի մէջ, որ Խրուշչեւ մօտէն ճանչցաւ դրամատէրները: Երկու ճաշերու ընթացքին, ջղայնանալու առիթ ունեցաւ: Ցերեկին յայտարարեց.— «Ամէն յոյս կորսնցուցած եմ ձեզ համաձայնավար դարձնելու: Ամէն բան, կ'ըսէ ռուսական առածը, իր ճախճախուտէն գոհ է, դուք ալ ձերինէն գոհ էք, բայց ուշադրութիւն ճախճախուտ չեմ ուզեր ան-ուանել մեր ընկերվարական վարչաձեւը»:

Շատեր խնդացին, սակայն Խրուշչեւ իրենց մահապճը կը կարդար ...:

Իրիկուան ճաշին, Խրուշչեւ կը յայտարարէր. «Հաւանաբար ձեր դրութեան յաղթանակին կը հաւատաք, իսկ ես ընկերվարութեան յաղթանակին կը հաւատամ, կը տեսնեմ որ կը ժպտիք, ուշադրութիւն չեմ ըսեր որ մարգարէ մընեմ, բայց կրնամ ըսել որ ձենէ ոմանք դառն զարթօնքներ պիտի ունենան երբ տեսնեն թէ իրենց հաշիւները սխալ էին: Կը ներէք, չեմ ուզեր ձեզ վիրաւորել, կ'ուզէի միայն խօսիլ ապագային մասին այնպէս ինչպէս կը տեսնեմ»:

Եւ վարչապետը կատակախօս կը դառնար երբ իրեն կ'ըսէին որ «տնտեսական ակումբը» երբեք այդքան մարդ չէր տեսած.— «Զարմանալի չէ: Մեզ մօտ, Խորհրդ. Միութեան մէջ վայրեր կան ուր ուղտը անծանօթ է, երբ դիպուածով մէկ հատ մը տեսնուի ամէն մարդ կը վազէ: Կ'ուզեն մօտէն տեսնել, դպչիլ: Այս իրիկուն ալ դրամատիրական անուանի ընկերութեան մը մէջ. համայնավար մը կայ, շատ բնական է որ դուք ալ ընէք, ինչպէս մեզ մօտ կ'ընեն այն ուղտին համար որուն մասին խօսեցայ»:

Եւ այդ ճաշին ընթացքին էր որ պատահեցաւ առաջին միջադէպը: Մէկը կ'ըսէ. «Ի՞նչպէս կ'ըլլայ որ խորհրդային լրագողները կրնան ազատօրէն գրել իրենց ուզածը Ամերիկայի մասին, մինչ Մոսկուայի ամերիկացի թղթակիցները գրաքննութեան ենթարկուած են»:

Խրուշչեւ կը կտրէ.— «Ես հոս եկած եմ ձեր նախագահին հրաւէրով, համաձայնած ենք որ չխօսինք վիճարանութեանց առիթ տուող հարցերու շուրջ»: Բայց հարց տուողը կը պնդէ «այդ պատասխանը չէ հարցումիս»: Այս անգամ Խրուշչեւ կը փրփրի.— «Եթէ զիս ընդմիջէք, չեմ պատասխաներ: Կամ հիւրասիրութեան ապացոյց կուտաք, կամ կ'ըսէք որ այլեւս զիս չէք ուզեր լսել: Ես կրնամ երթալ: Իբրեւ մուրացիկ չեմ եկած ձեր երկիրը այլ՝ իբրեւ ներկայացուցիչը մեծ պետութեան մը: Եւ հիմա ձեզի պատասխանեմ: Կ'ըսէք որ թոյլ չենք տար որ «Ամերիկայի Ձայնը» լսուի Խորհրդ. Միութեան մէջ: Իսկ դո՞ւք: Ձկան ամերիկեան ձայներ զոր լսել կուտաք, սեւ երգիչը՝ Փօլ Ռոպսոնինը, օրինակ՝ եթէ ձեր ձայնը հաճելի ըլլար, սիրով կը լսէինք, բայց հաճելի չէ, որո՞ւնն է յանցանքը»:

Շաբաթ օր Խրուշչեւ Լոս-Անճըլըս մեկնեցաւ, ուրկէ Սան Ֆրանչիսքօ գնաց կիրակի օր:

ՈՂԲ. ԳԱԲ. ԼԱԶԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Պ. Ստեփան Էլչիբէկեան տասը հազար ֆրանք կը նուիրէ Հայ Մշակոյթի Տան:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Կայանի Ենթակոմիտէն իր խոր ցաւակցութիւնները կը յայտնէ Հ. Յ. Դ. Գերագոյն Մարմնին, Տիկին Ն. Լազեանի եւ ընտանեկան պարագաներուն ընկեր Գաբրիէլ Լազեանի անդարմանելի կորուստին առթիւ:

## ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆԻ
### ՅԻՇԱՏԱԿԻՆ

Փարիզի Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն յիշատակի երեկոյ մը կազմակերպած է՝

ԸՆԿԵՐ ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆԻ

մահուան առթիւ, Հոկտեմբեր 10ին:

Յաջորդով՝ մանրամասնութիւններ:



Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլէի օղափ. կայանին կը նուիրեն.— Պ. Հայկ Գըրըքճեան տասը հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Ժ. Տամլամեան հինգ հազար, Տէր եւ Տիկին Հրաչ Տարօնեան Եօանն Գարինի մկրտութեան առթիւ երեք հազար, Տիկին Դաւիթեան իր ողբացեալ քրոջ Տիկին Արմենուհի Պապայեանի յիշատակին հինգ հազար, Տիկին Պուրմայեան հազար, Տիկին Գարակիւլեան հազար, Ոմն՝ Օր. Ջիլինկիրեանի ամուսնութեան առթիւ հինգ հազար ֆրանք:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Եկեղեցիին վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ իր Հայերէնի Դասընթացքը վերաբացուած է, ուսուցչութեամբ Տիկ. Ս. Թորոսեանի: Դասերը Երեքշաբթի եւ Ուրբաթ օրեր, ժամը 19–21, երկու սեռէ աշակերտներու համար, Բարեգործական սրահին մէջ, 19ա, Րիւ Վանթիւր: Նոր արձանագրութիւններու համար դիմել սրահ, դասերու պահերուն: Ծնողքները կը հրաւիրուին օգտուիլ այս անվճար դասընթացքէն, իրենց զաւակները հայերէն կարդալ-գրելու ուսումէն չզրկելու նախանձախնդրութեամբ:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԻԼԻՈՅ ՇՐՋԱՆԻՆ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Արեւմտեան Եւրոպայի Կեդր. Կոմիտէն ընկերական ժողովի կը հրաւիրէ հետեւեալ մարմինները.—

21 Սեպտեմբեր Երկուշաբթի իրիկուան ժամը 9ին Պոմոնի Զաւարեան Ենթակոմիտէն եւ Վարանդեան խումբը:

22 Սեպտեմբեր Երեքշաբթի իրիկուն, ժամը 9ին Քրիստափոր Ենթակոմիտէն Ահարոնեան ակումբին մէջ:

23 Սեպտեմբեր Չորեքշաբթի իրիկուն, ժամը 9ին, Սէն Լուի Ակնունի Ենթակոմիտէն եւ Արամ խումբը:

24 Սեպտեմբեր, Հինգշաբթի իրիկուն, ժամը 9ին, Սէն Ժերոմի «Հայաստան» Ենթակոմիտէն եւ Իշխան խումբը:

### ՎԵՐԱՄՈՒՏ

Իսի Խրիմեան վարժարանը կը վերաբացուի 24 Սեպտեմբեր, Հինգշաբթի օր:

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ, Վալանս.— Համախորհրդ: Ուշ ստացանք ձեր յայտարարութիւնը:



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
### ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 2·500 | Ֆր. մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 1·500 | Ֆր. մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 1·000 | » » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 1·500 | » » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 2·000 | » » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 1·000 | » » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 1·000 | » » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 500 | » » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

« Իմ փափաքս ալ նոյնն է » ըսած է Խրուշչեւ :

Կիրակի իրիկուն Խրուշչեւ փոթորկալից ճաշ մը ունեցած էր ամերիկեան ընկերակցութեանց եօթը նախագահներու հետ : Ասոնցմէ մէկն էր որ մամուլի ասուլիսի մը ընթացքին պատմած էր անցուդարձը եւ Խրուշչեւի յայտարարութիւնները : Խորհրդային մենատէրը սակայն, չատ համաձայն չէ Ամերիկացիին տուած զեկուցումին, կը հերքէ մանաւանդ այն յայտարարութիւնը որուն համաձայն ըսած է .— « Բանուորական դասուն տէրն եմ » : Խրուշչեւ «անպարկեշտ» կ'որակէ Ամերիկացիին խօսքերը :

Երեքշաբթի օր Խրուշչեւ եւ ընտանիքը հասան խողերու եւ եգիպտացորենի քաղաքը՝ Տիզ Մօյնզ : Պանդոկին քովը երեք մեծ ցուցատախտակներ .— « Փօթօմաքի վրայ Միւնիխ չենք ուզեր », ուրիշ մը՝ «Առանց ազատութեան խաղաղութիւն չկայ », եւ երրորդ մը , ամէնէն պզտիկը եւ պարզը .— « Լաւ համայնավար մը մեռած համայնավար մըն է » :

Ամէն պարագայի մէջ, միջազգային մամուլը «ցաւով» կը դիտէ թէ ամերիկացի ժողովուրդը, մանաւանդ Քալիֆօրնիոյ մէջ, մեծ համակրանք ցոյց տուաւ Խրուշչեւի : Աւելի չատ բազմութիւն հաւաքուած էր զինքը դիմաւորելու համար քան նախորդ օրը հակահամայնավարներու կազմակերպած հաւաքոյթին , կը գրէ Մոնտի Թղթակիցը : Հեռատեսիլի հանդիսատեսները կը տեսնեն համակրելի ընտանիքը Խրուշչեւի, որ կը նմանի ամերիկ . որեւէ ընտանիքի : Տիկին Խրուշչեւ չատ պարզ, հանդարտաբարոյ կին մըն է : Այս բոլորը պատճառ եղած են որ միջին ամերիկացին սկսի մտածել թէ Ամերիկան ամէն բան չէ և թէ դիմացը կայ լուրջ մրցակից մը «երէկ աշակերտ, վաղը վարպետ » ինչպէս կ'ըսէ ինքը, Խրուշչեւ :

Եւ Վիանսօն - Փոնթէ կ'եզրակացնէ « Մոնտ »ի մէջ .— « Ամերիկան կը տեսնէ, նախ զարմանքով,ապա հետաքրքրութեամբ եւ որոշ մտավախութեամբ Ռուսիոյ իսկական դէմքը .— Եւ ընդունելու վրայ է որ աշխարհը փոխուած է եւ պէտք է նկատի առնէ այդ պարագան» :

## ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆԻ

### ՅԻՇԱՏԱԿԻՆ

Փարիզի Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն յիշատակի երեկոյ մը կազմակերպած է՝
ԸՆԿԵՐ ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆԻ
մահուան առթիւ, Հոկտեմբեր 10ին :
Յաջորդով՝ մանրամասնութիւններ :



## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ չրջանի բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն , ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ , 17 Րիւ Պլէօ :

ԿԸ ԽՕՍԻ՝

### ԸՆԿ. ՕՆՆԻԿ ՄԱՃԱՌԵԱՆ

Մերձաւոր Արեւելքի ազգային կեանքի մասին :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Յարութիւն Գայիչեան եւ Պ. Էմիլ Ժաքլար կը ծանուցանեն թէ այս Կիրակի 27 Սեպտեմբեր, Փարիզի Հայոց եկեղեցին (Րիւ Ժան Կուժօն) հոգեհանգիստ պիտի կատարուի իրենց ողբացեալ հօր՝

ՊԵՏՐՈՍ ՇՄԱՒՈՆԵԱՆԻ

եւ իրենց, կնոջ Տիկին Էմիլ Ժաքլարի յիշատակին :

Կը հրաւիրուին իրենց յիշատակը յարգողները :

×

Այրի Տիկին Եղսա Սուքիասեան, Տէր եւ Տիկին Յակոբ Սուքիասեան, Տէր եւ Տիկին Ջօհրապ Սուքիասեան , Պ. Մուշեղ Սուքիասեան եւ պարագաները կը յայտարարեն թէ Սեպտեմբեր 27ին Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյն մէջ հոգեհանգիստ պիտի կատարուի ի յիշատակ

ԼԵՒՈՆ ՍՈՒՔԻԱՍԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ :

## ՓՈԽԱՆ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏԻ

Փուաթիէէն, Պ. Շնորհք Միքայէլեան, կը նուիրէ հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչի Ֆէյսանվիլիէի օդափոխութեան կայանին, իր ննջեցեալներուն յիշատակին :

×

Տէր եւ Տիկին Մեծպահքեան (Պուա Քօլոմպէն) կը նուիրեն հազար ֆրանք , ի նպաստ Հայ Կարմիր Խաչի բարենպատակ ձեռնարկներուն, փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Տիկին Վէլէտեանի մահուան առթիւ :





Imprimerie Spéciale
du Journal « Haratch »



## ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Նիսի եւ չրջանի Կրօն. Ընկերակցութեան անդամները ընդհ. ժողովի կը հրաւիրուին Հոկտեմբեր 14ին, 1959, Կիրակի կէսօրէ ետք ժամը 16ին, Նիսի եկեղեցւոյ սրահին մէջ, ընտրելու համար վարչական նոր կազմը :

Անդամագրուելու եւ անդամակցութիւնները վերանորոգելու համար դիմել եկեղեցին, ամէն առաւօտ ժամը 9 – 12, անձամբ կամ նամակով եւ կատարել անդամատուրքի պարտականութիւնը ու փոխարէնը ստանալ համապատասխան ընկալագիր եւ նոր անդամատետր ու պաշտօնական փոխանորդագիր :

Անդամագրութիւններու եւ անդամակցութիւնները վերանորոգելու պայմանաժամը կը լրանայ Հոկտեմբեր չորսին, Կիրակի կէսօրին :

ԾԱՆՕԹ .— Մասնաւոր հրաւիրագիրներով իւրաքանչիւր անդամի ուշադրութեան յանձնուած են ընդհ. ժողովի վերաբերեալ մանրամասնութիւնները :

Ի դիմաց Նիսի Կրօնական Ընկերակցութեան վարչութեան (ԿՆԻՔ)

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութեան, Առնուվիլ

Ի գիտութիւն մերազնեայ սիրելի ժողովուրդին կը յայտարարուի թէ այս Կիրակի, Ս- Եկեղեցւոյս անուան տօնակատարութիւնը պիտի կատարուի , ինչպէս ամէն տարի, այս տարի եւս պիտի կատարուի մատաղի օրհնութիւն յաւարտ պատարագի եւ կը բաժնուի ժողովուրդին : Կը պատարագէ եւ կը քարոզէ Կաթ. Փոխանորդ Պատուիրակ՝ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ : Եկեղեցւոյս փոքրիկներու դասը կ'երգէ պատարագի ամբողջ արարողութիւնը ղեկավարութեամբ դպրապետ Պ. Գէորգ Հուպոյեանի :

Կը հրաւիրուի չրջանիս եւ Փարիզի եկեղեցասէր ժողովուրդը :

Սկիզբն ժամերգ. ժամը 8.30ին, Ս. պատարագ ժամը 10ին :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Իսրայէլ Սեդրաքի Թահմազեան, ծնած 1912ին, Հիւսիսային Կովկասի Մայքօպ նահանգի Տուպինկա գիւղը : Վերջին համաշխարհային պատերազմին գինուորագրուած : Իր մասին որեւէ տեղեկութիւն հաղորդել Բ. Աճէմեանի՝

202, RUE DU FBG ST. MARTIN, PARIS - X°

Կը խնդրուի ամերիկահայ թերթերէն արտատպել :

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԻՍԻ .— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան վարժարանին մէջ :

Հ. Յ. Դ. Պորտոյի Մուրատ խումբի ժողովը այս Երկուշաբթի գիշեր , սովորական հաւաքատեղին : Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը :

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԻԼԻՈՅ ՇՐՋԱՆԻՆ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Արեւմտեան Եւրոպայի Կեդր. Կոմիտէն ընկերական ժողովի կը հրաւիրէ հետեւեալ մարմինները .—

24 Սեպտեմբեր, Հինգշաբթի իրիկուն , ժամը 9ին, Սէն Ժերոմի «Հայաստան» ենթակոմիտէն եւ Իշխան խումբը :

26 Սեպտեմբեր, Շաբաթ գիշեր Նիսի Գէորգ Չաւուշ խումբը, սովորական հաւաքատեղին :

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Այս Կիրակի, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ, եղանակի առաջին պարանցիկ - ցերեկոյթը, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան, ժամը 16 – 23 :

## ՎԵՐԱՄՈՒՏ

Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղի դպրոցները կը վերաբացուին Հոկտեմբեր մէկէն : Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները առաջնորդել դասընթացքներուն :

Հոկտեմբեր 1, Փասքալի Թաղը :
Հոկտ. 2, քաղաքին մէջ (ակումբը) :
Հոկտ. 3, Րիւ Լաֆայէթ :

×

Իսիի Խրիմեան վարժարանը կը վերաբացուի 24 Սեպտեմբեր, Հինգշաբթի օր :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնէն Տէր եւ Տիկին Կարպիս Պըզտիկեան եւ զաւակներն ու ազգականները՝ հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնեն Լիոնի քահանայ հայրերուն եւ բոլոր հայրենակիցներուն, բարեկամներուն, ծանօթներուն, որոնք ցաւակցութիւն յայտնած են անձամբ, ծաղկեպսակով, նամակով, հեռագրով, հեռաձայնով իրենց սիրեցեալ աղջկան եւ քրոջ ու ազգականին՝

ՏԻԿԻՆ ՄԱՐԳՐԻՏ ՏԻՎԱԼԻ ծնեալ Պզտիկեանի տխուր յուղարկաւորութեան առթիւ, որ կատարուեցաւ 15 Սեպտեմբեր, Գշ. օր, ու մարմինը ամփոփուեցաւ Քիւսէի ընտանեկան դամբարանին մէջ :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Տէր եւ Տիկին Թադէոս Պապանեան եւ Տէր եւ Տիկին Ե. Միքայէլեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փրատոյի Մայր Եկեղեցւոյ մէջ իրենց սիրեցեալ մօր՝

ԱՅՐԻ ՏԻԿ. ԵՂԻՍԱԲԷԹ ՊԱՊԱՆԵԱՆԻ
(Պոլսեցի)

հոգւոյն ի յիշատակ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

Այս առթիւ ընտանիքը հետեւեալ նուէրները կ'ընէ .—

Երկու հազարական ֆրանք «Յառաջ»ին, «Հայ - Բոյժ»ին, Կապոյտ եւ Կարմիր Խաչերուն : (Ստանալ «Յառաջ»էն) :

×

Փոլատ ընտանիքը եւ իրենց պարագաները կը ծանուցանեն որ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, այս Կիրակի իրենց մօր ողբացեալ Ովսաննա Փոլատի մահուան տարեդարձին առթիւ, ինչպէս նաեւ իրենց հօր Սահիտ Փոլատի, իրենց քրոջ Զահիտայի եւ աղջկան Ռօզայի յիշատակին :

Այս առթիւ Փոլատ ընտանիքը հինգ հազար ֆրանք կը նուիրէ Ֆ. Կապոյտ Խաչի օգափոխութեան կայանին : (ըՍտանալ «Յառաջ»էն) :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 9ին : 7, Պուլվ. տ'Աթէն, Պար տը Կլօպի սրահը : Օրակարգ.— Ա) Պատգ. ժողովի զեկուցում : Բ) Հաշուետուութիւն : Գ) Վարչութեան ընտրութիւն : Վարչութիւնը կը խնդրէ իր բոլոր անդամներէն ներկայ գտնուիլ տարեվերջի սոյն կարեւոր ժողովին :

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Օգն. Մարմինը հաճելի պարտականութիւն մը կը նկատէ հրապարակաւ ալ իր շնորհակալութիւնները յայտնելու Գ. ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ հիմնարկութեան որ բարեհաճեցաւ 180.000 ֆրանքի գումար մը տրամադրել, որպէսզի կարելի ըլլայ իր օգափոխութեան կայանին մէջ ընդունիլ տասը կարօտ մանուկներ :

Այս վեհանձն նուիրատուութիւնը պատեհութիւն ընծայեց ոչ միայն հիմնարկութեան փափաքին գոհացում տալու, այլ նաեւ որոշ բարելաւումներ մտցնելու կայանին մէջ :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Եկեղեցիին վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի հանդիսաւոր արարողութեամբ կը կատարուի Վարագայ խաչի տօնը : Կը պատարագէ եւ կը քարոզէ Տ. Խորէն քհնյ. : Տեղի կ'ունենայ խաչահանգիստի մասնաւոր արարողութիւնը : Ս. Պատարագը ժամը 9.45 - 11.45 : Եկեղեցասէր հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալ :

× Շաբաթը երկու օր տրամադրել կրցող պաշտօնեայ կ'ուզուի : Դիմել եկեղեցի :

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ :

ԿԸ ԽՕՍԻ՝

ԸՆԿ. ՕՆՆԻԿ ՄԱՃԱՌԵԱՆ

Միջնաւոր Արեւելքի ազգային կեանքի մասին :

ՀՈԿՏԵՄԲԵՐ 31, ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ
Թատրոն Փօլ Ֆարալիf,
21 Րիւ Իվ Թուտիf
Դերասան ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆ
կը ներկայացնէ՝

## ՄՆԿԼՁԱԿՑԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ

Հայ կեանքէն, 3 արար :
Ջուարթ կատակերգութիւն, Փարիզաբնակ ԳՐԻԳՈՐ ՎԱՀԱՆԻ
Մանրամասնութիւնները յաջորդով :

## ՎԵՐԱՄՈՒՏ

Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղի դպրոցները կը վերաբացուին Հոկտեմբեր մէկէն : Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները առաջնորդել դասընթացքներուն :

Հոկտեմբեր 1, Փասքալի Թաղը :
Հոկտ. 2, քաղաքին մէջ (ակումբը) :
Հոկտ. 3, Րիւ Լաֆայէթ :

×

Իսիի Խրիմեան վարժարանը կը վերաբացուի 24 Սեպտեմբեր, Հինգշաբթի օր :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Իսրայէլ Սեդրաքի Թահմազեան, ծընած 1912ին, Հիւսիսային Կովկասի Մայքօպ նահանգի Տուպինկա գիւղը : Վերջին համաշխարհային պատերազմին զինուորագրուած : Իր մասին որեւէ տեղեկութիւն հաղորդել Բ. Աճէմեանի՝

202, RUE DU FBG ST. MARTIN, PARIS - X'

Կը խնդրուի ամերիկահայ թերթերէն արտատպել :

×

Հայաստանէն Լենինականի շրջանի Թոփառլու գիւղացի Ղուկասի որդի Անուշաւան Թորոսեանը, մօրը անունը Արաքսի : Տեղեկացնել Առաքելեանի, 7 Րիւ Շոմոն, Փարիզ (19) :





Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆԻ
### ՅԻՇԱՏԱԿԻՆ

Փարիզի Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն յիշատակի երեկոյ մը կազմակերպած է՝

ԸՆԿԵՐ ԳԱԲՐԻԷԼ ԼԱԶԵԱՆԻ

մահուան առթիւ, Հոկտեմբեր 10ին :

Յաջորդով՝ մանրամասնութիւններ :

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութեան, Առնուվիլ

Ի գիտութիւն մերազնեայ սիրելի ժողովուրդին կը յայտարարուի թէ այս Կիրակի, Ս- Եկեղեցւոյս անուան տօնակատարութիւնը պիտի կատարուի, ինչպէս ամէն տարի, այս տարի եւս պիտի կատարուի մատաղի օրհնութիւն յաւարտ պատարագի եւ կը բաժնուի ժողովուրդին : Կը պատարագէ եւ կը քարոզէ Կաթ. Պատուիրակ՝ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ : Եկեղեցւոյս փոքրիկներու դասը կ'երգէ պատարագի ամբողջ արարողութիւնը ղեկավարութեամբ դպրապետ Պ. Գէորգ Հուպոյեանի :

Կը հրաւիրուի շրջանիս եւ Փարիզի եկեղեցասէր ժողովուրդը :

Սկիզբն ժամերգ. ժամը 8.30ին, Ս. պատարագ ժամը 10ին :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան վարժարանին մէջ :

Հ. Յ. Դ. Պորտոյի Մուրատ խումբի ժողովը այս Երկուշաբթի գիշեր, սովորական հաւաքատեղին : Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը :

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտօք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, Մատուռին կից սրահին մէջ : Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԻԼԻՈՅ ՇՐՋԱՆԻՆ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Արեւմտեան Եւրոպայի Կեդր. Կոմիտէն ընկերական ժողովի կը հրաւիրէ 26 Սեպտեմբեր, Շաբաթ գիշեր Նիսի Գէորգ Չաւուշ խումբը, սովորական հաւաքատեղին :

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Այս Կիրակի, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ, եղանակի առաջին պարանցիկ - ցերեկոյթը, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան, ժամը 16 - 23 :

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 2.500 | Ֆր. մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 1.500 | Ֆր. մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 1.000 | » » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 1.500 | » » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 2.000 | » » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 1.000 | » » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 1.000 | » » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 500 | » » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

Նոյն խանդավառ ընդունելութիւնը նաեւ Թալէի մէջ, ուր հասաւ կէսօրին։ Նախագահը, որուն կ'ընկերանար Տիկին տը Կոլ, դիմաւորուեցաւ քաղաքապետ Վանտրուի կողմէ։ Յաղթական կամարներ բարձրացած էին ամէն կողմ ։

Թաղապետարանին մէջ Նախագահը պատասխանելով Վանտրուի ճառին, յայտարարեց . — Նկատելով որ Ֆրանսա փորձառութիւնը, նոյնիսկ՝ սովորութիւնը ունի իր շրջագիծէն դուրս ելլելու եւ ազդեցութիւն ու գործունէութիւն ունենալու ամէն տեղ, ճանչցուելու ամէն տեղ ու երբեմն՝ չճանչցուելու, բայց բոլորին կողմէ ուզուելու, նկատի ունենալով այս բոլորը՝ Ֆրանսա անգամ մը եւս կարեւոր դեր մը ունի. այդ դերը պիտի խաղայ ժողովուրդներու մեծ բախումին մէջ՝ որ տեղի պիտի ունենայ ուշ կամ կանուխ, որմէ կրնայ պատերազմ ծագիլ, բոլորին մահը հասնիլ։ Բայց ես կը կարծեմ թէ այդ բախումէն խաղաղութիւնը պիտի ծնի, այսինքն՝ մեր սերունդին, եւ մասնաւորապէս այս գեղեցիկ երիտասարդութեան՝ որ ցոյց կու տաք այսօր, ապրելու կարելիութիւն պիտի ստեղծուի, որպէսզի ընտանիքներ կազմէ եւ կազմակերպէ իր աշխատանքը, որպէսզի բարելաւէ իր ապրելակերպն ու ճակատագիրը՝ հայրենիքի ճակատագրին հետ ։

Այս առիթով մամուլը կը յիշէ նաեւ հետաքրքրական միջադէպ մը։ Թալէի մէջ, երբ Նախագահը նաւահանգիստ կ'այցելէր, Առեւտուրի գրասենեակի նախագահը Սատի Քառնոյի մէջ չքանշանը յանձնեց տը Կոլի, ըսելով. «Թոյլ տուէք ինծ ձեզի յանձնել ձեր նախորդներէն մէկուն չքանշանը»։ Տը Կոլ պատասխանեց.— Ահ, խեղճ Քառնօ։ Ուրախ եմ որ կ'ընդունիմ այս չքանշանը, բայց, Պարոն, գիտցէք որ ես ոչ մէկ նախորդ ունիմ ...։

Կէսօրէ ետք Նախագահը գնաց Արաս, ուր դիմաւորուեցաւ ընկերվարական պարագլուխ եւ Նախկին վարչապետ Կի Մոլէի կողմէ։ Մօտ 15.000 հոգի համախմբուած էր Հերոսներու հրապարակին վրայ, ուրկէ անցաւ Նախագահը՝ Թաղապետարան եր[illegible] Պատասխանելով Կի Մոլէի բարիգալուստի խօսքերուն, տը Կոլ ըսաւ.— Պարոն քաղաքապետ, պարոն երեսփոխան, սիրելի բարեկամս՝ ձեր խօսքերէն յուզուած եմ։ Հարկ չեմ զգար ձեզ ըսելու՝ թէ ինչու յուզուած եմ Արասի մէջ։ Արաս շատ տառապեցաւ եւ չկորսնցուց իր քաջութիւնը։ Օրինակ մըն է ան՝ մեր բոլորին համար։ Ինքզինքս մեծարուած կը զգամ՝ ձեր մէջ գտնուելով ։

Յետոյ, ժողովուրդին դառնալով յայտարարեց թէ Ֆրանսա կը բարձրանայ շարունակ եւ պիտի շարունակէ բարձրանալ՝ ազգային միասնականութեամբ։ Յիշեց նաեւ Ալժերիոյ մասին իր ըրած յայտարարութիւնը, աւելցնելով թէ բոլոր Ֆրանսացիները համաձայն են իրեն հետ ։

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Այս Կիրակի, Ազգ. Տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ, եղանակի առաջին պարանցիկ-ցերեկոյթը, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան, ժամը 16 - 23 ։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ֆրանսահայ Կապ. Խաչի Մարսիլիոյ մասնաճիւղին կողմէ Շ. Միսաքեան սրահին՝ 3000 Ֆրանք ։

Պ. Աբրահամ Թուրիկեանէ (Իսի) 2000 Ֆրանք ։

Ընկ. Պօղոս Պարոնեանէ՝ Գրիգոր Նաթուրեանի մահուան առթիւ 1000 Ֆր.։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Ազգ. Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ եկեղեցւոյ Նուիրուած Աստուածածնայ շատ գեղեցիկ քանդակագործ մէկ նկարը, Տիկին Սէֆէրեանի կողմէ իր Թոռնիկին Ալժերիայէն վերադարձին առթիւ ։

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Պ. Կարպիս Պզտիկեանէ 1500 Ֆրանք, իր սիրեցեալ աղջկան մահուան առթիւ։

### ՀՐԱՉ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այրի Տիկին Արշալոյս Հ. Սարգիսեան իր ամուսնոյն ողբացեալ ՀՐԱՉ ՍԱՐԳԻՍԵԱՆի մահուան հինգերորդ տարեդարձին առթիւ երեք հազարական Ֆրանք կը նուիրէ Կարմիր եւ Կապոյտ Խաչերու օգափոխութեան կայանին ։ (Ստանալ «Յառաջ»էն) ։

### ՀՐԱՒԷՐ ԼԻՈՆԱՀԱՅ ԾՆՈՂՔՆԵՐՈՒՆ

Լիոնի Հայկազեան վարժարանի վերամուտի առիթով կը հրաւիրուին բոլոր ծնողքները անխտիր, աշակերտ զաւակ ունենան կամ ոչ, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3.30ին, Նորակառոյց եկեղեցւոյ սրահը ուր պիտի տրուին 1959 - 1960 տարեշրջանի կրթական գործի մասին տեղեկութիւններ։ Փափաքելի է որ բոլոր հայ ծնողքները իրենց ներկայութեամբ պատուեն այս հրաւէրը ։

Ի դիմաց Լիոնի Ազգ. Միութեան
ԴԻՒԱՆ

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ ։

ԿԸ ԽՕՍԻ՝

## ԸՆԿ. ՕՆՆԻԿ ՄԱՃԱՌԵԱՆ

Մերձաւոր Արեւելքի ազգային կեանքի մասին ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Տէր եւ Տիկին Թադէոս Պապանեան եւ Տէր եւ Տիկին Ե. Միքայէլեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փրատոյի Մայր Եկեղեցւոյ մէջ իրենց սիրեցեալ մօր՝

ԱՅՐԻ ՏԻԿ. ԵՂԻՍԱԲԷԹ ՊԱՊԱՆԵԱՆԻ
(Պօլսեցի)

հոգւոյն ի յիշատակ ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները ։

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութեան, Առնուվիլ

Ի գիտութիւն մերազնեայ սիրելի ժողովուրդին կը յայտարարուի թէ այս Կիրակի, Ս. Եկեղեցւոյս անուան տօնակատարութիւնը պիտի կատարուի, ինչպէս ամէն տարի, այս տարի եւս պիտի կատարուի մատաղի օրհնութիւն յաւարտ պատարագի եւ կը բաժնուի ժողովուրդին։ Կը պատարագէ եւ կը քարոզէ Կաթ. Պատուիրակ՝ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ։ Եկեղեցւոյս փոքրիկներու դասը կ'երգէ պատարագի ամբողջ արարողութիւնը ղեկավարութեամբ դպրապետ Պ. Գէորգ Հուպոյեանի ։

Կը հրաւիրուի շրջանիս եւ Փարիզի եկեղեցասէր ժողովուրդը ։

Սկիզբն ժամերգ. ժամը 8.30ին, Ս. պատարագ ժամը 10ին ։

# Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Խրիմեան վարժարանին մէջ։

Հ. Յ. Դ. Պորտոյի Մուրատ խումբի ժողովը այս Երկուշաբթի գիշեր, սովորական հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը ։

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտօք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, Մատուռին կից սրահին մէջ ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 9ին։ 7, Պուլվ. տ'Աթէն, Պար տը Կլօպի սրահը։ Օրակարգ.— Ա) Պատգմ. ժողովի զեկուցում։ Բ) Հաշուետուութիւն։ Գ) Վարչութեան ընտրութիւն։ Վարչութիւնը կը խնդրէ իր բոլոր անդամներէն ներկայ գտնուիլ տարեվերջի սոյն կարեւոր ժողովին ։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Եկեղեցիին վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի հանդիսաւոր արարողութեամբ կը կատարուի Վարագայ Խաչի տօնը։ Կը պատարագէ եւ կը քարոզէ Տ. Խորէն Քհնյ.։ Տեղի կ'ունենայ Խաչահանգիստի մասնաւոր արարողութիւնը։ Ս. Պատարագը ժամը 9.45 - 11.45։ Եկեղեցասէր հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալ ։

× Շաբաթը երկու օր տրամադրել կը ցող պաշտօնեայ կ'ուզուի։ Դիմել եկեղեցի ։

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

ԵԳԻՊՏԱԿԱՆ ժողովրդական օփէրէթ մը պիտի ներկայացուի, ի մօտոյ, Գահիրէ, պանծացնելով «Սուէզի Ջրանցքին փառաւոր պատմութիւնը շինութենէն՝ մինչեւ ազգայնացում» ։ Նիւթը գրած է արաբ ծանօթ թատերագիր մը՝ Ռահման Էլ Խամսի ։ Գլխաւոր դերը, որուն ի՞նչ ըլլալը ցարդ անյայտ է, պիտի ստանձնէ արաբական աշխարհի ամէնէն ծանօթ երգիչը՝ Մոհամէտ Ապտէլ Վահապ ։

ՍՊԱՆԻՈՅ մէջ հակաֆրանքոյեական 6 սպաներու առաջին դատավարութիւնը տեղի ունեցաւ առջի օր. դատավճիռը տակաւին չէ տրուած, բայց կը կարծուի թէ խիստ պատիժներ պիտի սահմանուին ։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Պ. Տաքէս Պետրոսեանի, զաւակներուն եւ բոլոր պարագաներուն, ողբացեալ Տիկին Ազնիւ Պետրոսեանի մահուան առթիւ ։

## ԱՐԱՐԱՅԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ

Արարայի ճակատամարտին 41րդ տարելիցը պիտի տօնուի Փրատոյի Մայր եկեղեցւոյն մէջ, Կիրակի, Հոկտեմբեր 11ին ։ Առաւօտուն հոգեհանգստեան պատարագ եւ եկեղեցական արարողութիւն՝ մասնակցութեամբ Դպրաց Դասուն ։ Աշխարհական հանդիսութիւն՝ յաւարտ պատարագի, ի ներկայութեան Ֆրանսական քաղաքային եւ զինուորական բարձրաստիճան անձնաւորութեանց, զանազան ընկերակցութեանց ներկայացուցիչներու եւ Մարսիլիոյ գաղութին ։ Պաշտօնական հանդիսութեան պիտի նախագահէ եւ խօսի Միութեանս պատուակալ Նախագահ եւ Պատ. Լեգէոնի սպայ՝ Պ. Շ. Տ. Թէքէեան ։

Կոչունք՝ ժամը 1ին՝ Շաթօ տէ Ֆլէօրի ընդարձակ սրահին մէջ ։ Մասնաւոր կարգադրութիւն՝ Միութեան տարեց ընկերներուն համար ։

Հաւանօրէն հանդիսութեանց ներկայ ըլլայ նաեւ՝ Զօր Քէօնիկ ։

Մարսիլիոյ գաղութը կը հրաւիրուի Ռազմիկի փառատօնին եւ յարգանքով խոնարհի՝ Արարայի նահատակներու սրբազան յիշատակին առջեւ ։

## Ա. Ձ. Դ.

«Արեւելքի Փուպլուններու Ազգային Միութիւնը» պաշտօնապէս կը հրաւիրէ երկու պատերազմներու Հայ Նախկին Ռազմիկները, փառահեղ տողանցքին որ պիտի կատարուի այս կիրակի (Սեպտ. 27), 1914 – 18ի զինադադարի 41րդ տարեդարձին առթիւ ։

Հաւաքուիլ՝ ժամը ճիշդ 17.15ին, Րօն Փուէն տէ Շան զ'էլիզէ, Քլէմանսոյի արձանին առջեւ, դրօշակներով եւ շքանշաններով ։

Ժամը 19.30ին զինեձօն՝ Սերքըլ Միլիթէռ ։

×

Այն նախկին ռազմիկները որ Բոցը վերարծարծեցին, անցեալ Օգոստոս 14ին, կրնան այդ օրը հանուած նկարները գտնել Հայ Նախկին Ռազմիկներու գրասենեակը բերել, 32 Րիւ տը Թրէվիզ ։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Արամ Իսպէնջեանի մահուան տխուր առիթով, փոխան ծաղկեպսակի՝ Կրընօպլի Կապ. Խաչը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Գոստիկեանէ երկու հազար ֆր. ի նպաստ իր դպրոցին ։

×

Համաչարսանճաղի Հայր. Միութեան Մարսէյլի եւ Լիոնի մասնաճիւղերը իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն հայրենակից Կարապետ Կարապետեանի եւ իր պարագաներուն, իրենց հօր և աներոջ ՂՈՒԿԱՍ ԿԱՐԱՊԵՏԵԱՆի մահուան առթիւ (Զարսանճաղի Խարեսիկ գիւղէն) եւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն հազար ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման, հազար ֆր. Մշակոյթի Տան, հազար ֆր. Կ. Խաչին, հազար ֆր. Նոր Սերունդին ։

Ստանալ «Յառաջ»էն ։

## ՎԵՐԱՄՈՒՏ

Կապոյտ Խաչի Վիէնի մասնաճիւղի դպրոցները կը վերաբացուին Հոկտեմբեր մէկէն ։ Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները առաջնորդել դասընթացքներուն ։

Հոկտեմբեր 1, Փասքալի Թաղը ։

Հոկտ. 2, քաղաքին մէջ (ակումբը) ։

Հոկտ. 3, Րիւ Լաֆայէթ ։

×

Իսիի Խրիմեան վարժարանը կը վերաբացուի 24 Սեպտեմբեր, Հինգշաբթի օր ։

×

Փոն տը Շէրիւի Հայ Ազգ. Միութեան դպրոցի դասաւանդութիւնները կը վերսկսին Հինգշաբթի Հոկտ. մէկին ։

Արձանագրութիւնները կ'ըլլան ուսուցիչ Պ. Թրազօշի միջոցաւ, եւ ծնողքներէն կը խնդրուի չզլանալ իրենց պարտականութիւններէն մայրենի լեզուի դաստիարակութեան առթիւ ։

×

Մարսէյլի Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ Կրօն. Ընկերութեան եւ Կ. Խաչի Պուլվար Օտտոյի մասնաճիւղի ազգային դպրոցը կը վերաբացուի Հոկտեմբեր մէկին, Հինգշաբթի առաւօտեան ժամը 10–12 ։ Ուսուցչութեամբ Պ. Ա. Սարգիսեանի ։

Ծնողքներէն կը խնդրուի իրենց զաւակները առաջնորդել դպրոց, արձանագրութիւնը կը կատարուի տեղւոյն վրայ ։

## ՀՐԱՒԷՐ ԼԻՈՆԱՀԱՅ ԾՆՈՂՔՆԵՐՈՒՆ

Լիոնի Հայկազեան վարժարանի վերամուտի առիթով կը հրաւիրուին բոլոր ծնողքները անխտիր, աշակերտ զաւակ ունենան կամ ոչ, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3.30ին, Նորակառոյց եկեղեցւոյ սրահը ուր պիտի տրուին 1959 – 1960 տարեշրջանի կրթական գործի մասին տեղեկութիւններ ։ Փափաքելի է որ բոլոր հայ ծնողքները իրենց ներկայութեամբ պատուեն այս հրաւէրը ։

Ի դիմաց Լիոնի Ազգ. Միութեան
ԴԻՒԱՆ

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

